Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 5

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1944

Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 5

«Սովետական Հայաստան» թերթի
հրատարակչություն
1944

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

# ՀՐԱՄԱՆ

## ԳԵՐԱԳՈՒՅՆ ԳԼԽԱՎՈՐ ՀՐԱՄԱՆԱՏԱՐԻ

1 ՄԱՅԻՍԻ 1944 ԹՎԻ № 70 ՔԱՂ. ՄՈՍԿՎԱ

Ընկեր կարմիրբանակայիններ և կարմիրնավատորմայիններ, սերժանտներ, սպաներ ու գեներալներ, պարտիզաններ ու պարտիզանուհիներ: Սովետական Միության աշխատավորներ: Գերմանական կեղեքիչների լծի տակ ժամանակավորապես ընկած և բռնի կերպով Գերմանիա ֆաշիստական տաժանակրության քշված եղբայրներ ու քույրեր:

Սովետական Կառավարության և մեր բոլշևիկյան պարտիայի անունից ողջունում և շնորհավորում եմ Ձեզ մայիսի 1-ի օրվա առթիվ:

Մեր երկրի ժողովուրդները մայիսի 1-ի օրը դիմավորում են Կարմիր Բանակի նշանավոր հաղթությունների իրադրության մեջ:

Ստալինգրադի մոտ գերմանական դիվիզիաները ջախջախելու ժամանակից ի վեր Կարմիր Բանակը համարյա անընդհատ հարձակում է գործում: Այդ ժամանակամիջոցում Կարմիր Բանակը մարտերով անցավ Վոլգայից մինչև Սերետը, Կովկասի նախալեռներից մինչև Կարպատները, ոչնչացնելով թշնամական աղտեղությունը և մաքրելով նրան սովետական հողից:

1943—1944 թ. թ. ձմեռային կամպանիայի ընթացքում Կարմիր Բանակը շահեց Դնեպրի ու Աջափնյա Ուկրաինայի համար մղված պատմական ճակատամարտը, խորտակեց գերմանացիների պաշտպանողական հզոր ամրությունները Լենինգրադի մոտ և Ղրիմում, հմուտ, սրընթաց գործողություններով հաղթահարեց գերմանական պաշտպանությունը Հարավային Բուգի, Դնեստրի, Պրուտի, Սերետի ջրային բնագծերի վրա: Համարյա ամբողջ Ուկրաինան, Մոլդավիան, Ղրիմը, Լենինգրադի ու Կալինինի մարզերը, Բելոռուսիայի զգալի մասը մաքրված են գերմանական զավթիչներից: Հայրենիքին են վերադարձվել հարավի մետալուրգիան, Կրիվոյ Ռոգի, Կերչի և Նիկոպոլի հանքերը, Դնեպրի և Պրուտի միջև ընկած արգավանդ հողերը:



Ֆաշիստական ստրկությունից ազատագրվել են տասնյակ միլիոնավոր սովետական մարդիկ:

Կատարելով հարազատ հողը ֆաշիստական զավթիչներից ազատագրելու մեծ գործը, Կարմիր Բանակը հասավ Ռումինիայի ու Չեխոսլովակիայի հետ եղած մեր պետական սահմաններին և այժմ շարունակում է թշնամու զորքերին ջախջախել Ռումինիայի տերիտորիայում:

Կարմիր Բանակի հաջողությունները հնարավոր դարձան սովետական հրամանատարության ճիշտ ստրատեգիայի ու տակտիկայի շնորհիվ, մեր մարտիկների ու հրամանատարների բարոյական բարձր ոգու և հարձակողական թափի շնորհիվ, մեր զորքերին սովետական առաջնակարգ ռազմական տեխնիկայով լավ հագեցնելու շնորհիվ, մեր հրետանավորների, ականաձիգների, տանկիստների, օդաչուների, կապավորների, սակրավորների, հետևակայինների, հեծելազորայինների, հետախույզների աճած արվեստի և մարզվածության շնորհիվ:

Այդ հաջողություններին զգալի չափով օժանդակում էին մեր մեծ դաշնակիցները՝

Ամերիկայի Միացյալ Նահանգները և Մեծ Բրիտանիան, որոնք Իտալիայում ճակատ են պահում գերմանացիների դեմ և մեզնից հեռացնում են գերմանական զորքերի զգալի մասը, մեզ մատակարարում են ստրատեգիական չափազանց արժեքավոր հումք ու սպառազինություն, սիստեմատիկ ռմբակոծության են ենթարկում Գերմանիայի ռազմական օբյեկտները և այդպիսով ջլատում վերջինիս ռազմական կարողությունը:

Սակայն Կարմիր Բանակի հաջողությունները կարող էին անկայուն լինել և նրանք ի չիք կդարձվեին հակառակորդի կողմից հասցված առաջին իսկ լուրջ հակահարվածից հետո, եթե Կարմիր Բանակին թիկունքից նեցուկ չլինեին մեր ամբողջ սովետական ժողովուրդը, մեր ամբողջ երկիրը: Կարմիր Բանակը Հայրենիքի համար մղվող մարտերում ցուցաբերեց անօրինակ հերոսություն: Սակայն սովետական ժողովուրդը պարտք չմնաց Կարմիր Բանակին:

Պատերազմի դժվարին պայմաններում սովետական ժողովուրդը վճռական հաջողություններ ձեռք բերեց սպառազինության, ռազմամթերքի, հանդերձանքի,



պարենամթերքի մասսայական արտադրության և դրանք ժամանակին Կարմիր Բանակի ռազմաճակատները փոխադրելու գործում: Անցած տարվա ընթացքում լուրջ կերպով աճեց սովետական արդյունաբերության հզորությունը: Գործարկվեցին հարյուրավոր նորանոր գործարաններ, հանքահորեր, տասնյակ էլեկտրոկայաններ, երկաթուղագծեր, կամուրջներ: Սովետական նորանոր միլիոնավոր մարդիկ կանգնեցին դազգահների առաջ, տիրապետեցին ամենաբարդ պրոֆեսիաների, դարձան իրենց գործի վարպետներ: Պատերազմի քննությունը պատվով բռնեցին մեր կոլխոզները և սովխոզները: Սովետական գյուղացիությունը պատերազմի ժամանակվա դժվարին պայմաններում առանց ձեռքերը ծալելու աշխատում է դաշտերում, պարենամթերք մատակարարելով մեր բանակին ու բնակչությանը, հումք հայթայթելով մեր արդյունաբերությանը: Իսկ մեր ինտելիգենցիան սովետական գիտությունն ու տեխնիկան, կուլտուրան և արվեստը հարստացրեց նորանոր նշանավոր նվաճումներով ու հայտնագործություններով: Հայրենիքի պաշտպանության գործում անգնահատելի ծառայություն են մատուցել

սովետական կանայք, որոնք անձնվիրաբար աշխատում են հօգուտ ռազմաճակատի շահերի, արիաբար տանում են պատերազմի ժամանակվա բոլոր դժվարությունները, մարտական սխրագործությունների են ոգեշնչում Կարմիր Բանակի մարտիկներին՝ մեր հայրենիքի ազատարարներին:

Հայրենական պատերազմը ցույց տվեց, որ սովետական ժողովուրդը ընդունակ է հրաշքներ գործելու և հաղթող դուրս գալու ամենածանր փորձություններից: Բանվորները, կոլխոզնիկները, սովետական ինտելիգենցիան, սովետական ամբողջ ժողովուրդը տոգորված են թշնամու ջախջախումն արագացնելու, ֆաշիստների ավերած տնտեսությունը ամբողջությամբ վերականգնելու, մեր երկիրը է՛լ ավելի ուժեղ և ունևոր դարձնելու վճռականությամբ:

Կարմիր Բանակի հարվածների տակ ճարճատում ու քայքայվում է ֆաշիստական պետությունների բլոկը: Վախն ու խրաբանցումը այժմ տիրում են Հիտլերի ռումինական, հունգարական, ֆիննական և բուլղարական «դաշնակիցների» մեջ: Այժմ հիտլերյան այդ կամակատարները, որոնց երկրները օկուպացված են և օկուպացվում



են գերմանացիների կողմից, չեն կարող չտեսնել, որ Գերմանիան տանուլ է տվել պատերազմը: Ռումինիան, Հունգարիան, Ֆինլանդիան և Բուլղարիան կատաստրոֆից խուսափելու միայն մեկ հնարավորություն ունեն՝ խզել կապերը գերմանացիների հետ և դուրս գալ պատերազմից: Սակայն դժվար է հուսալ, որ այդ երկրների ներկայիս կառավարությունները ընդունակ են խզելու իրենց կապերը գերմանացիների հետ: Պետք է ենթադրել, որ այդ երկրների ժողովուրդները ստիպված են իրենք իրենց ձեռքը վերցնել գերմանական լծից իրենց ազատագրման գործը: Եվ այդ երկրների ժողովուրդները որքան ավելի շուտ հասկանան, թե ինչպիսի փակուղու մեջ են դցել նրանց հիտլերականները, որքան ավելի շուտ ընդհատեն ամեն տեսակ օժանդակություն իրենց գերմանական ստրկացնողներին ու նրանց կամակատարներ կվիսլինգներին իրենց սեփական երկրում, այնքան ավելի քիչ զոհ ու ավերածություններ կկրեն այդ երկրները պատերազմից, այնքան ավելի շատ նրանք կարող են հույսը դնել դեմոկրատական երկրների ըմբռնման վրա:

Հաղթող հարձակման հետևանքով Կարմիր

Բանակը ավելի քան 400 կիլոմետր երկարությամբ հասավ մեր պետական սահմաններին, գերմանա-ֆաշիստական լծից ազատագրելով սովետական օկուպացված հողի ավելի քան երեք քառորդը: Բանը այժմ այն է, որ ֆաշիստական զավթիչներից մաքրենք մեր ամբողջ հողը և վերականգնենք Սովետական Միության պետական սահմանները ամբողջ գծով՝ Սև ծովից մինչև Բարենցի ծովը:

Սակայն մեր խնդիրները չեն կարող սահմանափակվել մեր Հայրենիքի սահմաններից թշնամու զորքերի վռնդմամբ: Գերմանական զորքերն այժմ հիշեցնում են վիրավոր գազանին, որը հարկադրված է սողալ դեպի իր որջը—Գերմանիայի սահմանները, վերքերը բուժելու համար: Բայց իր որջը քաշված վիրավոր գազանը չի դադարում վտանգավոր գազան լինելուց: Մեր երկիրը և մեզ հետ դաշնակից երկրները ստրկացվելու վտանգից ազատելու համար պետք է կրնկակոխ հետապնդել գերմանական վիրավոր գազանին և նրան մինչև վերջը ոչնչացնել նրա սեփական որջում: Իսկ հետապնդելով թշնամուն, մենք պետք է գերմանական գերությունից ազատենք մեր եղբայր լեհերին, չեխոսլո-



վակներին և Արևմտյան Եվրոպայի մեզ դաշնակից մյուս ժողովուրդներին, որոնք գտնվում են հիտլերյան Գերմանիայի գարշապարի տակ:

Հասկանալի է, որ այդ խնդիրը ավելի դժվարին գործ է ներկայացնում, քան գերմանական զորքերի վռնդումը Սովետական Միության սահմաններից: Այն կարելի է լուծել Սովետական Միության, Մեծ Բրիտանիայի և Հյուսիսային Ամերիկայի Միացյալ Նահանգների միայն համատեղ ջանքերի հիման վրա, Արևելքից մեր զորքերի ուժերով և Արևմուտքից մեր դաշնակիցների զորքերի ուժերով համատեղ հարվածներ հասցնելու միջոցով: Տարակույս չի կարող լինել, որ միայն այդպիսի կոմբինացված հարվածը կարող է լրիվին կործանել հիտլերյան Գերմանիան:

Ընկեր կարմիրբանակայիններ և կարմիրնավատորմայիններ, սերժանտներ, սպաներ և գեներալներ, պարտիզաններ ու պարտիզանուհիներ: Սովետական Միության աշխատավորներ: Գերմանական կե-

*թիչների լծի տակ ժամանակավորապես ընկած և բռնի կերպով Գերմանիա ֆաշիստական տաժանակրության քշված եղբայրներ և քույրեր:* Ողջունում և շնորհավորում եմ Ձեզ մայիսի 1-ի տոնի առթիվ:

## ՀՐԱՄԱՅՈՒՄ ԵՄ

*Ի պատիվ Կարմիր Բանակի պատմական հաղթանակների՝ ռազմաճակատում և ի նշանավորումն Սովետական Միության բանվորների, կոլխոզնիկների և ինտելիգենցիայի մեծ հաջողությունների՝ թիկունքում, այսօր, աշխատավորության համաշխարհային տոնի օրը, ժամը 20-ին Մոսկվայում, Լենինգրադում, Գոմելում, Կիևում, Խարկովում, Ռոստովում, Թբիլիսիում, Սիմֆերոպոլում, Օդեսայում սալյուտ տալ հրետանային քսան համազարկով:*

Կեցցե՛ մեր սովետական Հայրենիքը:

Կեցցե՛ մեր Կարմիր Բանակը և Ռազմա-Ծովային Նավատորմը:



Կեցցե՛ սովետական մեծ ժողովուրդը:

Կեցցե՛ Սովետական Միության ժողովուրդների բարեկամությունը:

Կեցցե՛ն սովետական պարտիզաններն ու պարտիզանուհիները:

Հավե՛րժ փառք մեր Հայրենիքի ազատության և անկախության համար մղվող մարտերում զոհված հերոսներին:

Մա՛հ գերմանական զավթիչներին:

**ԳԵՐԱԳՈՒՅՆ ԳԼԽԱՎՈՐ ՀՐԱՄԱՆԱՏԱՐ,**
**ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՄԱՐՇԱԼ**
**Ի. ՍՏԱԼԻՆ**

---

## Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԵՐԿԵՐԻ 4-ՐԴ ՀՐԱՏԱ-ՐԱԿՈՒԹՅԱՆ 2-ՐԴ ՀԱՏՈՐԻ ՀԱՅԵՐԵՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ

*Հայպետհրատի հրատարակությամբ հայերեն լեզվով լույս է տեսել Վ. Ի. Լենինի երկերի ռուսերեն 4-րդ հրատարակության 2-րդ հատորը: Այս հատորի մեջ մտնում են Վլադիմիր Իլյիչ Լենինի 1895—1897 թվերին գրած գործերը:*

*Ներկա հատորում տպագրված են «Ֆրիդրիխ Էնգելս», «Սոցիալ-դեմոկրատական պարտիայի ծրագրի նախագիծն ու բացատրությունը», «Ռուսական սոցիալ-դեմոկրատների խնդիրները», «Ո՞ր ժառանգությունից ենք մենք հրաժարվում», «Նարոդնիկական պրոժեկտորության մարգարիտներ» և այլ աշխատություններ ու հոդվածներ:*

*Վ. Ի. Լենինի երկերի 4-րդ հրատարակության 2-րդ հատորի վերջում տրված*



*են ծանոթություններ, թե ո՛ր աշխատությունը ո՛ր թվին է գրել Լենինը, ո՛րտեղ են տպագրվել: Այնուհետև տրված են Վ. Ի. Լենինի կյանքի ու գործունեության տարեթվերը:*

*Ներկա հատորի առաջին մասում դրված են Վ. Ի. Լենինի նկարը (1897 թիվ), առանձին աշխատությունների առաջին անգամ տպագրված գրքերի շապիկները, Շուշենսկոյե այն տան նկարը, որտեղ ապրել է Վ. Ի. Լենինը աքսորի ժամանակ:*

*Գիրքը հրատարակված է լավ թղթի վրա, խնամքով: Հայերեն թարգմանությունը խմբագրել են Հ. Ասլանյանը և Զ. Գրիգորյանը: Տիրաժը 5.000 է, գինը 8 ռուբլի:*

Պատասխանատու խմբագիր՝
Զ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

